# Գ Ո Ր Ծ Ա Ր Ա Ն Ո Ւ Մ

*ՍԵՐԳԵՅ ԱՆՏՈՆՈՎ*

Հոկտեմբերյան մութ գիշերին, Պուտիլովյան գործարանի գործարկոմում, նախկին վագոնային բաժնի երկու սենյակներն զբաղեցնելով, հերթապահում էին երկու բանվորներ՝ Միխայլովը և Չեշիխինը: Միխայլովը երկու օր առաջ էր եկել ռազմաճակատից և իսկույն ընդգրկվել ամենօրյա աշխատանքում:

Բակում ցուրտ էր ու խոնավ: Բանվորները վառել էին վառարանը, տեղավորվել կողքին և տաքանում էին, զգալով, թե որքան տաք ու հաճելի է այդ փոքրիկ սենյակում: Վառարանի վրա դրված էին սպասողներին բավականություն խոստացող կարտոֆիլով լի, մրոտ զինվորական կաթսայիկն ու թեյնիկը:

Ուտել էին ուզում:

Արդեն գիշերվա ժամը մեկին մոտ էր, երբ հարևան սենյակից լսվեցին ինչ-որ մեկի վստահ ու եռանդուն քայլերը: Հետո բացվեց դուռը և ներս մտան երկուսը՝ մեկը գարնանային վերարկուով և վեր բարձրացված օձիքով, մյուսը, ըստ երևույթին վարորդը, կաշվե կուրտկայով:

Չեշիխինն ու Միխայլովը անմիջապես ճանաչեցին Լենինին. հրապարակում, մայիսի տասներկուսին, ընդամենը մի քանի ամիս առաջ, քսանհինգհազարանոց միտինգում, գլանման ցեխի աշխատողների համար նա ճառ արտասանեց:

— Բարև՛ ձեզ, ընկերնե՛ր,— ասաց Վլադիմիր Իլյիչը՝ ձեռքը մեկնելով սկզբից Չեշիխինին, ապա Միխայլովին:

Հուզված ու կարմացած, նրանք լռությամբ պատասխանեցին ձեռքմեկնումին, այդպես էլ չհասցնելով ասել իրենց ազգանունները: Ինքը Լենինն էր եկել այդ ուշ ժամին: Զննելով սենյակը, Լենինը նկատեց պատին խփված մեխը, որից և խնամքով կախեց վերարկուն ու տրորված փափուկ գլխարկը:

— Ձեզ մոտ տաք է,— ասաց նա ու, ինչպես արհասարակ անում են սառնամանիքից վերադարձած մարդիկ, ամուր-ամուր շփեց ձեռքերը:— Հիանալի է, հիանալի:

Լենինը ձեռքը դրեց շալվարի գրպանն ու հարցրեց.

— Դե, իսկ ինչպիսի՞ տրամադրություն կա գործարանում: Իշխանությունը գրավելու հարցում ինչպիսի՞ վերաբերմունք են ցուցաբերում բանվորները: Ռազմաճակատ գնո՞ւմ են:

Վլադիմիր Իլյիչը հայացքը նետում էր մերթ Չեշիխինին, մերթ Միխայլովին, սպասելով ճշմարտացի ու սպառիչ պատասխանի:

— Մենք, իհարկե, պետք է նստենք,— անսպասելի առաջարկեց նա դեռ կանգնած բանվորներին ու ինքը առաջինը աթոռը մոտեցնելով սեղանին, նստեց Չեշիխինի ու Միխայլովի դիմաց:

Միխայլովը հանգիստ ու անշտապ պատասխանում էր, իսկ Չեշիխինը, հավանություն տալով, հաճախակի գլխով էր անում:

— Տրամադրությունը, Վլադի՛միր Իլյիչ, ճիշտն ասած, լավ է: Իսկ դեպի իշխանությունն ու ռազմաճակատն ունեցած վերաբերմունքի մասին, ինքներդ դատեք: Կարմիր գվարդիայի ջոկատները հենց առաջին կանչին կազմակերպվեցին և գործարանից շարժվեցին ուղիղ դեպի Լուգա, դեպի Ցարսկոյե Սելո՝ Կերենսկու դեմ:

— Այդպես, այդպես,— ասաց Լենինը,— հիանալի է,— ու նորից հարցրեց.— իսկ քանի՛ ջոկատ են ուղարկել ռազմաճակատ: Նրանք ինչպե՞ս են զինված: Լա՞վ են կռվում:

— Կռվում ենք բանվորի պես, Վլադի՛միր Իլյիչ,—պատասխանեց Միխայլովը:

— Այսի՞նքն:

— Սա,— ընդհատեց Չեշիխինը, գլխով ցույց տալով ընկերոջը,— հենց նոր պատմեց, թե ինչպես իրենց ջոկատը Լուգի անտառներում հանդիպեց Կերենսկու զորամասին: Մերոնք այնպիսի ջարդ էին տվել, որ նրանք փախել էին, ինչպես առնետներ:

— Ուրեմն բանվորի՛ պես,— կատակելով նորից հարցրեց Վլադիմիր Իլյիչը:

— Բանվորի պես:

Նա ուրախ ու բերկրալից ծիծաղեց ու հաճույքով կրկնեց

— Նշանակում է, փախա՞ն:

Դա նոր ծնունդ առած բանակի առաջին հաղթանակներն էին, որը ուրախացնում էր Վլադիմիր Իլյիչին ինչպես վիթխարի, չտեսնված հաջողությունը:

— Փախա՞ն:

Ռազմաճակատից ստացված լուրերը ոգեշնչում էին Լենինին, այդ պատճառով էլ Միխայլովը պատմեց գործարանի դրության, Պուտիլովականների ու նրանց ընտանիքների տրամադրության մասին, նոր կազմակերպված կարմիր գվարդիայի ջոկատների մարտիկների ու նրանց կարիքների մասին: Վլադիմիր Իլյիչը ուշադիր լսում էր նրան:

— Զենքի համար չի բավականացնում պանորամը[1],— մտատանջված ասաց Միխայլովը,— հաշտա-

[1] Հրանոթի օպտիկական հարմարանք:



յին հեռախոսային ցանցի համար հաղորդալարեր ու ապարատներ չկան: Հենց դրանց համար եմ եկել, Վլադի՛միր Իլյիչ:

— Պանորամ ու ապարատներ: Նշանակում է, կռվում եք ինչպես հա՞րկն է: Իսկ ե՞րբ պետք է վերադառնաք: Ինչպե՞ս: Գործարանը լիովին կկատարի՞ ռազմաճակատի պահանջը: Արդյոք կարո՞ղ է գործադուլ լինել:

Միխայլովը պատասխանեց.

— Կարծում եմ, ոչ: Գործարանը, անկասկած, լիովին կկատարի ռազմաճակատի պահանջը, Վլադի՛միր Իլյիչ: Երկու օրից հետո կմեկնեմ:

Վլադիմիր Իլյիչը անվերջ նորանոր հարցեր էր տալիս Չեչիխինին ու Միխայլովին: Ինչպե՞ս է պարենի հարցը: Գործարանում վառելանյութ կա՞: Ինչպե՞ս են իրենց պահում մենշևիկներն ու էսէռները: Նրանց ազդեցությունը մե՞ծ է արդյոք բանվորների վրա: Նրան հետաքրքրում էր ամեն ինչ:

Բանվորները պատասխանում էին:

Վլադիմիր Իլյիչը նստած էր կորացած, ծնկները ձեռքերում գրկած, այնպես էր լսում, կարծես ամբողջ կյանքը նստել էր այդ սեղանի առաջ, ամբողջ կյանքում ճանաչել էր այդ մարդկանց:

Չեչիխինին ու Միխայլովին թվում էր, թե Լենինը հիմա կավարտի խոսակցությունն ու կըխնդրի գտնել գործարանի ղեկավարներից որևէ մեկին կամ, գուցե, միանգամից բոլորին: Բայց ժամանակն անցավ, իսկ Վլադիմիր Իլյիչը, ըստ երևույթին, չէր էլ մտածում այդ մասին: Եվ հանկարծ նրանք հասկացան, որ այս այցն ու խոսակցությունը անկախ իր անսպասելիությունից և ուշ լինելուց, ելնում էին կարևոր ու անհետաձգելի գործերի շաիերից. որոնցից բաղկացած էր Լենինի կյանքը:

— Այսպե՛ս, այսպե՛ս,— բանվորներին լսելով կրկնում էր նա ու երբեմն պատասխանում,— անհրաժեշտ է այդ հաշվի առնել:— Նա ծոցատետրը հանելով արագ ու շտապ-շտապ ինչ-որ բան գըրանցեց այնտեղ ու նորից հարցրեց.

— Իսկ այստեղ, երեխաների համար ի՞նչ է արվում: Հնարավո՞ր է կազմակերպել մանկապարտեզներ, դպրոցներ: Որևէ մեկը մտածո՞ւմ է այդ մասին:

Եվ նա զրուցակիցներին նայեց այն հույսով լի հայացքով, որ ոչ միայն ինքը, իհարկե, ոչ միայն ինքն է մտահոգված այդ խնդրով:

— Այսպես, այսպես,— կրկնեց նա, պատասխանը լսելով ու էլի ինչ-որ բան գրանցելով ծոցատետրում, հարցեր տվեց:

— Վլադիմի՛ր Իլյիչ,— ասաց Միխայլովը,— իսկ ինչո՞ւ եք այսպես ուշ եկել:

— Ինչո՞ւ է ուշ: Այստեղ միշտ էլ մարդ է լինում, —ծիծաղեց Լենինը և ավելացրեց այլ տոնով.—Ես

եղա։ Կարմիր գյուղում և ճանապարհին որոշեցի անցնել այստեղ իմանալու, թե ինչ դրություն է Պուտիլովյան գործարանում։

Ժամանակն անցավ, լավեց հսկա գործարանի աղմուկը։ Սկսեց թշշալ վառարանի վրայի կաթսայիկը։

— Ա՜յ, ա՜յ, ա՜յ,— հանկարծ բացականչեց Վլադիմիր Իլյիչը։— Իսկ կաթսայիկի մասին դուք բոլորովին մոռացե՞լ եք։

Միխայլովն անմիջապես վեր ցատկեց ու, պատառաքաղը խոթելով կաթսայիկի մեջ, ասաց.

— Թերևս, ճիշտ ժամանակին...— մի փոքր դադար տվեց ու առաջարկեց.— Վլադի՛միր Իլյիչ, գուցե կցանկանայիք ուտել։

— Հաճույքով,— համաձայնեց Լենինը։

Կաթսան դրեցին սեղանի վրա, և Վլադիմիր Իլյիչը բոլորի հետ միասին վերցրեց կարտոֆիլը, արագ մաքրեց այն, գլորելով մի ափից մյուսը, որպեսզի չայրեր ձեռքերը, աղ ցանեց և մեծ ախորժակով սկսեց ուտել։ Խաշած կարտոֆիլը շատ համեղ էր։

Հացի փոքրիկ կտորի վրա աղ ցանելով, գավաթով խմեց տաք թեյը ու գովեց.

— Հիանալի՜ ընթրիք է։ Հիանալի՜ թեյ է։

Ու այդ պահին նա Չեշիխինին ու Միխայլովին նայեց երջանիկ հայացքով։

Նա ամբողջ էությամբ այդտեղ էր, այդ բանվորների հետ, որոնցից մեկը երկու օր հետո պետք է մեկներ ռազմաճակատ, ամբողջ էությամբ այդտեղ էր, ինչպես օրվա ընթացքում ողջ էությամբ նավաստիների, զինվորների, գյուղացիների հետ էր եղել։ Եվ եթե վաղը կամ գուցե նույնիսկ այսօր, գիշերը խոսի գիտնականի, վագոնավարի կամ բանվորուհու հետ, նա ողջ էությամբ կլինի նրանց հետ։

Չեշիխինին ու Միխայլովին հրաժեշտ տալիս, Լենինը ամուր սեղմեց նրանց ձեռքը և, գիտենալով, թե նրանց ամենից շատ ինչն է անհանգստացնում, համոզիչ ձայնով ասաց.

— Գործերը լավ են գնում։ Մենք անշուշտ կհաղթենք։

— Նրա աչքերը փայլում էին գոհ մարդու աչքերի փայլով, որին սեփական անձի երջանկության համար պետք էր միմիայն աշխարհի մարդկության երջանկությունը, ու կրկնեց.

— Անկասկած կհաղթենք։ Մենք անպայման կհաղթենք։

Ղեկավարներին այդպես էլ չկանչեց։

Նրան ուղեկցեցին մինչև գործարանի մուտքը, տեսան, թե ինչպես նստեց մեքենա, ինչպես փակվեց դռնակը, ինչպես սլացավ ավտոմեքենան։ Կարծես մի տեսակ ցավալի դարձավ, երբ ավտոմեքենան գրեթե իսկույն անհետացավ մշուշի մեջ։

Չեշիխինն ու Միխայլովը լուռ մեխվել էին իրենց տեղերում, նայելով այն կողմը, ուր սլացավ Լենինին տանող ավտոմեքենան, հետո լուռ վերադարձան գործարկոմի սենյակը։

Այստեղ նրանք նույնպես երկար լռեցին։

— Էսպե՜ս,—վերջապես ասաց Միխայլովը՝ հոգատարությամբ վերցնելով երկաթյա գավաթը, որը ընդամենը մի քանի րոպե առաջ իր ձեռքին բռնել էր այդքան պարզ ու հասարակ, այդքան արտասովոր մարդը՝ Լենինը։

*Թարգմ. ԼԻԴԱ ԱՆԱՆՅԱՆԻ*

# ԼԵՆԻՆ ՊԱՊԻՆ ԿԻՄԱՆԱ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Ես չեմ տեսել Լենին պապին,
Բայց տեսա իմ երազում.
Հանդիպում է մեկ էլ ճամփիս,
Հետս քայլում ու ասում.
—Հագնվել ես մաքուր, կոկիկ,
Մազերդ լավ հարդարել,
Իսկ դասերդ, սիրո՛ւն աղջիկ,
Արդյոք. լա՞վ ես սովորել։—
Ես շիկնում եմ ու շփոթվում,
Ապա ասում.—Բա ինչպե՞ս,
Լենի՛ն պապի, ես դասերս
Սովորում եմ ջրի պես։

—Ահա թե ի՞նչ... իսկ մի ծիտիկ
Այսօր ինձ լուր է բերել,
Թե՛ սևաչյա մի թուխ աղջիկ
Դասը լավ չի սովորել։
Նույնիսկ ասաց, որ Լիլիկ է
Անունը այդ աղջկա։
Պիտի պատժեմ այն ծիտիկին,
Վաղը ինձ մոտ եթե գա...—
Ես հուզվեցի... ու արցունքիս
Կաթիլն ընկավ փոշու մեջ.
Ինչո՞ւ պիտի իմ պատճառով
Պատժեն իզուր ծտին խեղճ։

—Չէ՛, —ասացի, —Լենի՛ն պապի,
Մեղավոր չէ ծիտիկը.
Նա շատ լավն է, քեզ չի խաբի,
Ե՛ս եմ ծույլիկ-սուտլիկը...—
Երբ արթնացա, իմ ճակատից
Սառը քրտինք էր հոսում,
Այդ օրվանից մինչև հիմա
Էլ երբե՛ք սուտ չեմ խոսում։
Ու թվում է ամեն քայլիս
Հետևում է հիմա նա,
Եթե հանկարծ վատ բան անեմ,
Լենին պապին կիմանա...

# ՇԵԿՈՆ

ՀՐԱՆՏ ԲԱԳՐԱՋՅԱՆ



Նկ. ՎԱՋԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Կուսակցության շրջկոմը Զամոսկվորեչյեի Գուստավ Լիստի գործարանն էր ուղարկել նոր պրոպագանդիստ՝ Ելենա Պավլովային: Երիտասարդ, իր տարից ավելի լուրջ աղջիկը առաջին իսկ հայացքից դուր ավ խմբակի անդամներին:

Անմոռանալի էր նրա առաջին հանդիպումը ունկընդիրների հետ: Ուրախության, հպարտության և երկմըտանքի զգացումով, հուզմունքի ծիծաղելի արտահայտությունը դեմքին, նա մտավ սենյակ: Ելենային դիմավորեց վախվորած, հետաքրքրասեր, ժպտացող, հոգնած ու վստահ հայացքների ալիքը:

— Բարև՛ ձեզ, ընկերնե՛ր,— հազիվ լսելի ասաց նա, և սկսեց ուշադրությամբ զննել հավաքվածներին: Դրանք բանվորներ էին, որոնք 1905 թվականին զենք էին բռնել իրենց ձեռքին, անցել էին բանտերի ու աքսորների ճանապարհով, և պատանիներ, որոնք դեռ նոր էին մտել հեղափոխության պայքարի մեջ:

Գործարանի նոր ծանոթների մեջ էր նաև 13—14 տարեկան մի տղա՝ Սերգեյ Պրիվալովը, որն աշխատում էր դարբնոցային արհեստանոցում որպես փոքրավոր:

Բանվորները նրան «Շեկո» էին անվանում, շեկ մազերի պատճառով:

Տարօրինակն այն էր, որ նա բոլորովին նման չէր իր հորը՝ մոդելաձուլական արտադրամասի բանվոր, ցածրահասակ, մռայլ և ինքնամփոփ մարդուն: Զվարթ, մարդամոտ Սերգեյը պատրաստակամորեն պտտվում էր բանվորների շուրջը, ուշադրությամբ լսում էր նըրանց ու դիտում, թե ինչպես են աշխատում: Նա հագնում էր մեծ և մաշված կոշիկներ: Իսկ ուսին գցած բաճկոնը պատառոտված էր, և երկար թևքերն էլ շարունակ խանգարում էին, ու նա միշտ վերև էր ծալում դրանք:

— Շեկլի՛կ, հապա՛ մի թռիր ձուլարան:

— Ա՜յ Շեկո, ինչ ես քնում, աքցանը տո՛ւր:

— Շեկո՛, հապա՛ մի հնոցի կրակը նորոգիր:

Սերյոժկան, մաշված կոշիկները թփթփացնելով, հաճույքով և ուրախությամբ էր կատարում այդ բոլորը:

— Հենց հիմա, քեռի՛ Վաս...

— Պատրաստ է, Ֆե՛դ քեռի...

Տղան ամբողջ օրը պտտվում էր, հասցնում էր կատարել բոլորի հանձնարարությունները և օգնել բոլորին: Դարբնոցի հրացոլք, շոգեմուրճի դղրդացնող հարվածներ, ոտքի տակ ցնցվող գետին, զնդանի զնգոց, կրակի կայծեր, ձուլվածքի հոտ, ահա այսպիսին էր նրա աշխարհը: Սերյոժան սիրում էր դիտել, թե ինչ հեշտությամբ էր այդ վիթխարի շոգեմուրճը կռում շիկացած հսկայական երկաթի կտորը: Սիրում էր, երբ Ֆեդյա քեռին դարբնում էր մի որևէ բարդ դետալ, ինքնագոհ տեսքով ձեռքերը մաքրում էր իր կաշվե գոգնոցով, տակառից ջուր էր հանում շերեփով և անհագորեն խմում:

Սերյոժան մտերիմ էր շատերի հետ: Սակայն ամենից ավելի կապված էր մեխանիկականի փականագործ Սաշա Պետրովի հետ: Տաք, երկարավիզ բաճկոն հագած Սաշան նման էր սպորտսմեն-օդանավորդի: Սերյոժան շարունակ պտտվում էր նրա շուրջը:

Ի դեպ, նա անմիջապես մտերմացավ նաև Ելենայի հետ: Գուցե պատճառն այն էր, որ նոր էր որբացել. մի քանի ամիս առաջ մահացել էր նրա մայրը:

Լենան էլ անտարբեր չէր տղայի նկատմամբ: Հաճախ նա տղայի շիկահեր գլուխը բռնում էր ցրտից սառած ափերով և երկար ու քնքշորեն դիտում դեմքը, նայում աչքերին ու մեղմորեն ասում.

— Հիմա դու դպրոց պիտի գնայիր, Սերյո՛ժկա:

— Շատ եմ ուզում, բայց հնարավոր չէ: Հայրս ինձ պես ելլեքն ունի...— մեծի լրջությամբ պատասխանում էր փոքրիկ բանվորը:

Լենան լուռ շոյում էր տղայի գլուխը: Ու նրա ձեռքերի տակ անխնամ մետաքս մազերի մի դեզ էր առաջանում: Իսկ հետո երազկոտ ավելացնում էր.

— Ոչինչ, մի քիչ էլ համբերիր:

Սերյոժան իր խելոքության ու շիտակության պատճառով վաղուց էր ավագ կուսակցականների վստահությանը արժանացել: Եվ այդ վստահությունը նա ձեռք էր բերել մի լուրջ գործում:

Այդ պատահեց ամռան ամիսներին, երբ իրենց գոր-



ծունեությունն սկսեցին սևհարյուրակայինները: Գաղտնի ոստիկանությունը ցանկանում էր վտանգազերծել ավելի մարտական հեղափոխական կազմակերպությունները: Սկսվեցին շուրջկալներ, բանտարկություններ, ավերվեցին բոլշևիկյան թերթերը:

Գուստավ Լիստի գործարանը այդ իմաստով Մոսկվայի ամենավտանգավոր կազմակերպություններից մեկն էր, որտեղ բոլշևիկները ամուր հիմք էին դրել: Ոստիկանությանը հայտնի էր, որ այստեղ են թաքնըված թռուցիկները ու, թերևս, նաև զենքեր: Եվ հանկարծակի ներխուժեցին գործարան:

Բակում, արտադրամասերում և գրասենյակներում շաչեցին սրերը, աղմկեցին երկարաճիտ կոշիկների պայտած կրունկները, տարածվեց չդաբաղված կաշվի հոտ: Դա կատարվեց բավականին անսպասելիորեն: Նախորդ օրը վերանորոգման տեղամասի խառատ Նիկոլայ Վասիլևիչ Զամյատինը բերել էր թռուցիկների և գրքույկների հերթական կապոցը: Եվ վատն այն էր, որ դեռ չէին հասցրել «տեղավորել»:

Թերևս ոստիկանությունը որոշ տվյալներ ուներ, և դրա համար առաջին հերթին սկսեցին Զամյատինին հարցաքննել: Նրան հարցաքննում էին հենց այդտեղ, արտադրամասում, ավելի ճիշտ՝ ապակեպատով անջատված, փոքրիկ գրասենյակում, ուր դրված էր տեղամասի վարպետ Բատուրինի գրասեղանը: Զամյատինը պատասխանում էր նրանց հարցերին, բայց գլխում պտտվում էր այն միտքը, թե ինչպես տեղեկացնի յուրայիններին: Ինչպե՞ս հասկացնի, որպեսզի թաքցնեն թռուցիկները: Նրա դիմաց նստած էր հոգնած աչքերով ոչ երիտասարդ սպան: Իսկ կողքին կանգնած էին երկու ոստիկան: Աղոտ ապակիների ետևից նա տեսնում էր, թե ինչ իրարանցման մեջ են բանվորները, որոնք անհանգստացած խմբվում էին, ինչ-որ բաներ խոսում և, երբ մոտենում էր ոստիկանը, անմիջապես ցրվում էին:

— Որտե՞ղ եք թաքցնում թռուցիկները և որտեղից եք դրանք վերցնում,— հարցրեց սպան:

— Ի՞նչ թռուցիկներ,— զարմացավ Զամյատինը:

— Ամենասովորական, բոլշևիկյան:

— Այդպիսի բաներով, ձե՛րդ մեծություն, մենք չենք խաղում:

— Լա՜վ: Իսկ սա ի՞նչ է,— սպան բաց անելով թղթապանակը՝ մի ինչ-որ թուղթ հանեց և պարզեց բանվորի քթի տակ:

Զամյատինը ճանաչեց «իր» թռուցիկը, որը մի քըսան օր առաջ գործարանում ձեռքից-ձեռք էր անցնում: Կասկածից դուրս էր, որ իրենց բանվորներից կամ թերևս վարպետներից մեկնումեկը կապված է ոստիկանության հետ:

— Ինչպե՛ս թե «սա ի՛նչ է», թռուցիկ է,— անփութորեն պատասխանեց Զամյատինը,— հիմարն անգամ գիտե:

— Որտե՞ղ եք, ուրեմն թաքցնում դրանք:

— Ոչ մի նման բան չունենք, ձե՛րդ մեծություն: Է՜ն ասված, չունենք: Իսկ այս մեկը ինքներդ եք բերել:

— Հիմար մի՛ ձևացիր:

— Ես չգիտեմ, ձե՛րդ մեծություն, թե ով է հիմար ձևանում, բայց մեզ մոտ՝ գործարանում թռուցիկներ չկան,— հանգիստ պատասխանեց Զամյատինը:

— Դե, տես հա՜,— սպառնալով ընդհատեց սպան: Եվ մի ծխախոտ վառեց:

— Խնդրում եմ, ձե՛րդ մեծություն, ինձ հետ «դու»-ով չխոսեք,— հանդարտ ավելացրեց Վասիլի Նիկոլաևիչը:

— Մի տե՛ս, թե ինչպե՜ս է խոսում,— սպան աչքի տակով նայեց Զամյատինին, խորը շունչ քաշեց,—



դե լավ,— փոխված ձայնով արտասանեց նա,— ասացե՛ք, որտե՞ղ եք թաքցնում գրականությունը:

— Ես արդեն ասացի, ոչինչ չգիտեմ:

— Դո՛ւք գիտեք,— ձայնը բարձրացրեց սպան, վառվող ծխախոտը մոտեցնելով հարցաքննվողին,— ինքներս կգտնենք, ավելի վատ կլինի:

Բայց հանկարծ Նիկոլայ Վասիլևիչը աշխուժացավ. միջնապատի անկյունում, այնտեղ ուր սևին էր տալիս կոտրված ապակու անցքը, նա նկատեց Շեկոյի դեմքը:

Զամյատինի կալանքի մասին տղան լսել էր մոդելածուլարանում.

— Հենց հիմա, մեխանիկականի գրասենյակում նրան փարավոնները հարցաքննում են:

Սերյոժկան նետվեց դեպի մեխանիկականը: Նրան շատ էր հետաքրքրում, թե ինչ է կատարվում այնտեղ: Տղան աննկատելիորեն սողոսկել էր ներս և այժմ, համակ տեսողություն և լսողություն դարձած, հետևում էր անցուդարձին: Սպան նստած էր մեջքով դեպի տղան: Նրան չէին նկատել նաև ոստիկանները: Հանկարծ Շեկոյի և Զամյատինի հայացքները հանդիպեցին:

— Վերջապես ասելո՞ւ եք, թե՞ ոչ,— ձայնը բարձրացրեց սպան:

— Ինչ արած, ասե՛մ,— արդեն փոխված ձայնով ասաց բանվորը:

Սպան բարձրացրեց գլուխը, կարծելով, թե իր ըսպառնանքն է ազդել:

— Դե, իհա՛րկե,— քաջալերեց սպան:

— Լսի՛ր ուրեմն, բարի՛ մարդ: Ուշադի՛ր լսիր,— մտերմիկ ձայնով ասաց Զամյատինը:

Շեկոն կռահեց, որ դա իրեն էր վերաբերում:

— Հիմա դուրս կգաք արտադրամասի դռնից,— Զամյատինը ձեռքերով ցույց էր տալիս ճանապարհը,— կթեքվեք դեպի աջ, կանցնեք պահեստի առջևով: Եվ այնտեղ կգտնեք այն, ինչ ուզում եք:

— Դե՛, դե՛, բան ես ասում՝ կարգին ասա:

— Իսկ ես, ի՞նչ է, անկա՞րգ եմ ասում, ձե՛րդ մեծություն: Ասում եմ ձեր ուզածն այնտեղ է... Արկղում: Կափարիչը զգույշ կբարձրացնեք և մեջը կգտնեք գրականությունը: Հա՜-հա՜-հա՜, ամենաիսկական, բոլշևիկյան գրականություն:

Սպան կասկածամտորեն նայեց բանվորին ու զայրացած ասաց.

— Ստո՛ւմ ես:

— Ինչո՞ւ պիտի ստեմ, ձե՛րդ մեծություն: Դուք հետաքրքրվում եք, դե, ես էլ ասում եմ...

Սպան ուշադրությամբ նայում էր Զամյատինին և չգիտեր ինչպես հասկանալ նրան:

— Ստո՛ւմ է, ձե՛րդ մեծություն, մի՛ հավատացեք նրան,— հուշեց ոստիկաններից մեկը,— մի՞թե այդ խառնակիչները երբևէ ճիշտ բան կասեն: Պետք է ինքներս գտնենք:

— Է՜յ, դո՛ւ, մռո՛ւթ,— Զամյատինը աչքերը ոլորեց ոստիկանի վրա,— մարդավարի՛ արտահայտվիր:

Բայց Շեկոն շարունակությունը չլսեց, հասկացավ, որ այդ բոլորը ասված էր իր համար: Կամացուկ դուրս սողաց և վազեց մոդելածուլարանի կողմը, Սաշա Պետրովի մոտ: Եվ արդեն մի քանի րոպեից հետո քըշում էր տաշեղներ ու խարան բարձած ձեռնասայլակը: Տարավ ու դրանք թափեց աղբանոցում: Երկաթի տաշեղների ու խարանի տակ պահված էր բոլշևիկյան գըրականությունը:



## ՄՈՇՆ ԵՄ ՎԱՅՐԻ

*ԼԻԳԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*

Սևահատիկ, սևաթույր,
Մոշն եմ վայրի, քաղցրաբույր
Փշոտ թփում եմ ծնվում,
Ցողով, շողով եմ սնվում:
Մեծանում եմ, մեծանում,
Խոշորանում, քաղցրանում,
Եվ ջինջ ցողով լվացված,
Ողկույզ-ողկույզ կախվում ցած
Կողովներ ու դույլ առեք,
Եկեք անտառ, ինձ քաղեք:
Բայց իմացիր, ա՛յ Մինաս,
Այդքան հեշտ գործ չիմանաս,
Դո՛ւ էլ լսիր, Ասատու՛ր,
Փշեր ունեմ ես սուր-սուր,
Թե չքաղեք ինձ զգույշ,
Ձեզ կծակի հազար փուշ:



# ԱՂ ՈՒ ՀԱՑՈՎ

ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Շատ տարիներ հետո էլ հաճախ էի մեծերից լսում ծննդավայրիս՝ Վանի նվիրական անունը ու ճիգ թափում ինչ-որ չափով վերականգնել հիշողությանս մեջ այն ամենը, որ կապված է հայրենի օջախի ու վաղ մանկությանս հետ:

Երբեմն ինձ թվում էր, որ ես հիշում եմ ծննդավայրըս այնպես, ինչպես մեծերը, ու ինքնավստահ խառնըվում էի նրանց խոսակցություններին:

— Տյու ի՞նչ կհիշես, մաՌմ երեխա իր,— լսում էի մեծերից ու խորապես վիրավորվում: Այդպիսի մի կըշտամբանքից հետո, երբ պատանի էի, վերցրի թուղթ ու մատիտ և ամենայն մանրամասնությամբ նկարեցի մեր տունն ու շրջակայքը:

— Էս Չալղի փողոցը, էս հրապարակը մեր տան առաջ, էս ավազանները հրապարակում, էս մեր տունը իր քառանկյունի բակով, հավաբունը, թոնրատունը՝ երեք թոնիրներով, մառանները, մեր և հորեղբայրների և Ջանիկ տատի հարկաբաժինները, ելքը դեպի այգին, ջրհորը ու, վերջապես, մեր հիանալի այգին իր անուշաբույր խնձորենիներով ու տանձենիներով:

Մեծերը զարմացած իրար նայեցին. ներողամիտ նայեցին նաև ինձ ու նրանց աչքում կարծես բարձրացավ իմ հեղինակությունը:



Իհարկե շատ բան եմ մոռացել իմ հեռավոր մանկությունից, բայց բաներ կան, որ անջնջելիորեն տպավորվել են հիշողությանս մեջ: Դրանցից մեկն էլ մեր այգին է, որ լավագույններից էր Այգեստանում:

Պետք է ասել, որ իմ ավագ հորեղբայրը՝ Տեր-Արթենենց Արթին աղեն, որ զբաղմունքով ջրբաշխ էր, հատուկ սիրով էր մշակում իր և տատիս հողակտորները: Ծառերից ազատ մասը ամբողջովին հատկացված էր ծաղիկներին, որ սիրում էր ցանել հորեղբայրս, սերմերը բերելով տարբեր քաղաքներից: Ու Այգեստանում, երբ որևիցե առիթով ծաղկի պահանջ էր լինում, շտապում էին մեր տուն ու դիմում հորեղբորս.

— Արթի՛ն աղա, էսօր մեր տուն խարսնիս կա, Վահրիճ աղբորս կփսակեն, մի քիչ ծաղիկ տուր:

Ու տալիս էր հորեղբայրս, բայց ոչ մեկին մոտ չէր թողնում ծաղկամարգերին. սիրում էր իր ձեռքով հավաքել ծաղիկները, որովհետև առանձին բավականություն էր ստանում դրանից: Առանձին քնքշությամբ, մեկ առ մեկ պոկում էր ծաղիկները ու կազմում գեղեցիկ ծաղկեփունջ, երբեմն էլ դնդնալով քթի տակ.

Վարթն ի բացվե առավոտման շաղերով,
Իմ յար բախչեն վարդ կքյաղի մաղերով...

Այո, ոչ միայն ջրբաշխ, այլ նաև ծաղկաբաշխ էր հորեղբայրս: Եթե առաջին պարտականությունը կա-

տարում էր վճարովի, ապա երկրորդը նա անում էր անվճար, մեծ պատիվ համարելով իրեն համար:

Գեղասեր էր նա, ճաշակի տեր մարդ: Պարտեզի ուղիղ մեջտեղով ստեղծել էր մի գեղեցիկ ծաղկաթունել, որն սկսվում էր ջրհորի մոտից ու հասնում էր մինչև այգու ծայրը: Դալար ուռի ճյուղերից պատրաստված կամարների վրա շատ խիտ փաթաթվում էր շարմաշուղը և գույնզգույն ծաղիկներով կազմում թունել, որի տակով սիրում էինք վազել մինչև այգու վերջը և ետ:

Ամբողջ այգին ծածկված էր պտղատու ծառերով՝ մալաչա տանձ, դալասլի խնձոր, ծիրաններ տարբեր տեսակի, որոնցից չիր էին անում, փռելով մեր տան հարթ կտուրին: Ու երբ չրերը չորանալու վրա էին, անուշ բուրմունքով լցնում էին շրջապատը, մենք թաքուն կտուրն էինք բարձրանում ու լցնում գրպաններս: Չգիտեմ ինչու, մեզ չիրը ավելի էր դուր գալիս, քան թարմ ծիրանը:



Ինչ տեսակ ձուկ էլ որ բերեինք մեր տուն, ինչ ձևով էլ որ դրանք պատրաստեինք ու ճաշակեինք, իմ լուսահոգի մայրը սիրում էր հաճախ ասել.

— Մեր Վանա տառեխն ուրիշ պան էր, տառեխին ձուկ կխասնի՞...

Այդպես էր թե ոչ, բայց նույն գնահատականը տարեց շատ վանեցիներից եմ լսել:

Տառեխ ուտելը իսկական իրադարձություն էր երեխաներիս համար: Սիրում էինք շարվել վառած թոնրի շուրջը ու անհամբերությամբ սպասել, թե երբ կխորովեն թոնրի պատերին պոչերից կախված տառեխները, որոնց գլուխներից թոնրի մեջ էր կաթում ձկնայուղը՝ թոնրատունը լցնելով անուշ բուրմունքով: Երբեմն էլ թոնրի հատակին, կրակի վրա տեղավորում էին պուտուկը ,միջին՝ ձավարով փլավ, որ յուղը մեջը կաթի:

— Ծուկ՝ մեջ թոնրին, եղ՝ մեջ պուտկին,— սիրում էին ասել մեր մեծերը, արդարացնելով իրենց խնայողասիրությունը:

Հիշում եմ ինչպիսի եռուզեռ էր տիրում մեր տանը աշնան ամիսներին, երբ ղավուրմա էին պատրաստում: Պուտուկները լցնում կարմիր աղով ծեփած պանրով, թթու դնում կամ մառանի կարասները լցնում Շաղբաղից բերած կարմիր գինով:

Ձմռան պաշարների մեջ, իհարկե, պատվավոր տեղ էր գրավում աղ դրած տառեխը: Այն հարգված էր, մանավանդ, ձավարի փլավի հետ: Պոչերը բերանի մեջ կոխելով, օղակ-օղակ տառեխները շարում էին մանղալի կրակին, մի երկու անգամ շուռ ու մուռ տալիս ու վերցնում: Ախորժալի բուրմունքը՝ խառնված ծխին, լցնում էր շրջապատը:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

* * *

Շատ փոքր էի, երբ առաջին անգամ լսեցի պատերազմ խոսքը, որ սարսափով ու հուսահատությամբ էին արտասանում մեծերը:

Տագնապալից ամիսները հաջորդում էին մեկը մյուսին: Բոլորին տիրել էր անհաղթահարելի մի անհանգստություն: Կռիվը հասել էր նաև մեր քաղաքը: Այգեստանն ապրում էր արտակարգ լարված գոյավիճակ: Ամեն օր մեծերից լսում էինք քաղաքամիջում և Այգեստանի սահմաններում բորբոքված մարտերի, մեռնող, երբեմն նույնիսկ երեխաների, անօրինակ սխրանքների մասին:

Ու մի օր էլ Այգեստանում տարածվեց ուրախ լուրը, որը համակեց նաև մեզ՝ երեխաներիս.

— Ռուսական փրկարար զորք մտավ Վան...

Սակայն կարճատև եղավ այդ ուրախությունը: Մենք էլ չհասկացանք, թե ինչու: Մեծերը տենդագին պատրաստության մեջ էին: Կանայք արագորեն եփում ու թխում էին, տղամարդիկ արժեքավոր ունեցվածքը պահում էին թաքստոցներում, պարկերի մեջ տեղավորում այն նվազագույնը, ինչ պետք է վերցնենք հետներս: Թվում էր, թե ինչ որ տեղի է ունենում, ժամանակավոր մի բան է, վաղ թե ուշ, նորից պիտի վերադառնանք ու տեր կանգնենք մեր ունեցվածքին, նորից տաշեղներ պիտի որսանք հրապարակի ավազաններում, ջրաղացներ պտտեցնենք փողոցով անցնող առուներում, մեր այգու անուշահամ տանձ ու խնձորով լցնենք մեր ծոցերը, ծաղկաթունելի միջով վազենք ուրախ ճիչերով ու թոնրում խորովենք բուրումնավետ տառեխը:

Պատերազմի բոցեղեն լեզուները սկսեցին կիզել նաև մեր ոտքերը: Մենք էլ ճաշակելով նրա արհավիրքները, շատ շուտով, քան այդ հարկավոր էր, ճանաչեցինք պատերազմի այլանդակ դեմքը: Թողեցինք մեր նվիրական ծննդավայրը, տունն ու այգին և բռնեցինք գաղթի ճանապարհը:

* * *

Արդեն քանի օր է քայլում ենք գաղթի ճանապարհներով: Բոլորն են հոգնած, առանձնապես մենք՝ երեխաներս: Մեր տկար, դեռ չամրացած ոտքերը հրաժարվում են այլևս մեզ ծառայելուց: Ինչ էր լինելու մեր վիճակը, եթե կարգադրություն չստացվեր երեխաներին նստեցնել զինվորական գումակի ֆուրգոնների, մեկ-երկու հոգի յուրաքանչյուրի վրա:

Բաժանվելով մեր հարազատներից, ապավինեցինք ռուս զինվորներին, շեկ ու կապուտաչյա այդ բարի մարդկանց, որոնց լեզուն սակայն անհասկանալի էր մեզ:

Բախտս ժպտաց հենց սկզբից: Ֆուրգոնը, որին ինձ նստեցրին, բարձած էր նոր թխած հացով: Երբ տեղավորվեցի ֆուրգոնի առաջամասի մի անկյունում ու վրաս քաշեցի հացը ծածկող բրեզենտի ծայրը, հացի անուշ բույրը գլուխս պտտեցրեց, բայց չէի համարձակվում ձեռք տալ:

Իմ հյուրընկալները, ցորնագույն բեղ ու մորուքով, կարճ կարաբինները ուսներին գցած երկու զինվորներ, կողք-կողքի նստած մերթ ընդ մերթ ետ էին նայում, մի բան ասում, բայց ես չէի հասկանում նրանց:

— Կուշայ, կուշայ, մալչիկ,— ու որպեսզի հասկանամ, մեկը նրանցից կտրելով սոմի հացից մի կտոր, սկսեց ախորժակով ուտել: Գլխի ընկա ինչ է ուզում ասել, ուրախությամբ գործի անցա:

— Վոտ խարաշո, մոլոդե՛ց,— ասաց նա գոհունակությամբ: Ու այսպես ամրապնդվեց մեր բարեկամությունը: Ամրապնդվեց, ինչպես ասում են, աղ ու հացով: Մանկական ամբողջ հոգով ես սիրեցի նրանց ու հասկացա, որ թեև հարազատներից անջատվել եմ, սակայն ապավինել եմ նույնչափ հոգատար մարդկանց խնամքին:

# ՌՈՒԲԻԿԻ ՄՅԱԽԿԻԶՆԱԿՆԵՐԸ

*ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ*

Շատ ձյուն եկավ այս տարի: Էլ չէի հավատում, թե գարուն կգա: Բայց արեգակը հաղթեց:

Նստել եմ ավազանի բազալտե եզրին, որի ստվերոտ անկյուններում դեռևս ձյան բարակ շերտեր կան: Իսկ ավազանի միջից սառույցը լրիվ հալվել է ու վերածվել կապտավուն ջրի: Դիմացի պատի մոզաիկայի ֆոնը նույնպես կապույտ է:

Երկնքում էլ կապույտն ավելի շատ է, քան ճերմակը:

Մեքենաս էլ կապույտ է:

Հետո շուրջս եմ նայում՝ հեծանիվ քշող երեխաներին ու այն տղային, որը հեծանիվ չունի երևի ու լուռ նստել է կողքիս...

Վեր եմ կենում: Դույլով ջուր եմ վերցնում ավազանից: Շորի կտորը թրջում եմ դույլի մեջ, մաքրում մեքենաս:

Կողքիս նստած տղան էլ վեր է կենում տեղից, մի ուրիշ շորի կտոր է ընտրում իր համար ու ինքն էլ սկսում է անիվները մաքրել: Ես նրան չեմ խնդրում, որ օգնի ինձ. նա ուղղակի ինքն է որոշում օգնել: Երևի չի սիրում անգործությունը: Ինձ հետաքրքրում է այդ տղան: 10—11 տարեկան է. շիկավուն մազեր ունի ու մոխրագույն աչքեր:



Երբ վերջացնում ենք գործը, շնորհակալություն եմ հայտնում նրան, բայց նա միայն լուռ ժպտում է ինձ, ու դարձյալ նստում ենք արդեն տաքացած բազալտի վրա:

Մի հեծանվորդ է անցնում մեր մոտից, ու ինձ օգնող տղան հոգոց է արձակում: Ավելի եմ հետաքրքրվում նրանով ու հարց եմ տալիս.

— Ինչո՞ւ ես հառաչում, տղա՛:

— Մտածում եմ,— պատասխանում է:

— Ի՞նչ ես մտածում:

Տղան իր մոխրագույն




աչքերը հառում է վրաս ու զննում է ինձ, կարծես ուզում է ըստուգել՝ արժի՞ արդյոք անկեղծ լինել, և վերջապես ասում է.

— Մյախկիզնակների մասին:

— Ի՞նչ մյախկիզնակներ,— զարմանում եմ ես:

— Ռուսերեն լեզվի:

Ոչինչ չեմ հասկանում ու խնդրում եմ, որ նա բացատրի:

— Մյախկիզնակների պատճառով հայրս ինձ համար հեծանիվ չի գնում,— բացատրում է նա:

Խնդրում եմ, որ նա ավելի մանրամասն բացատրի:

— Պայման է կապել հետս:

— Ի՞նչ պայման:

— Ասում է՝ հինգ հատ «5» ստացիր իրար ետևից, հեծանիվ կգնեմ:

— Իսկ իրար ետևից հինգ հատ «5» ստանալն ի՞նչ մի դժվար բան է, որ չես կարողանում,— հարցնում եմ:

— Կարողանում եմ,— ասում է:

— Բա ինչո՞ւմն է բանը:

Նա շարունակում է բացատրել, ու ես նոր միայն լրիվ հասկանում եմ, թե բանն ինչումն է. մյախկիզնակների պատճառով ռուսերենից «5» չի կարողանում ստանալ, պայմանը չի կատարում, ու հայրը հեծանիվ չի գնում նրա համար: Խե՜ղճ տղա. ուրեմն նա էլ ինձ ու շատերի պես անիվներ երազող դժբախտ է...

— Լավ տղա ես դու,— ասում եմ:— Անունդ ի՞նչ է:

— Ռուբիկ,— հայացքը դեպի հեծանվորդների կողմը՝ նորից հոգոց է արձակում Ռուբիկը:

Լռում ենք որոշ ժամանակ: Ես չեմ դիմանում և խախտում եմ լռությունը:

— Դե լավ, Ռուբի՛կ ջան, ի՞նչ բան է հեծանիվը, որ դրա պատճառով տխրում ես:

Նա չի պատասխանում: Նայում է վրաս, թերահավատ մի քմծիծաղ է տալիս ու նորից շրջվում է ինձանից: Ես շարունակում եմ:

— Համ էլ, եթե հեծանիվ ունենաս, կարող է հանկարծ ավտոյի տակ ընկնես: Շառ է:

— Ինչո՞ւ պիտի ավտոյի տակ ընկնեմ, հո կույր

չե՞մ,— վայրանում է Ռուբիկն ու այնպես է ոտքից-գլուխ ինձ չափում, որ հազիվ եմ զսպում ծիծաղս: Հետո ցուցամատն ուղղում է երջանիկ հեծանվորդների կողմը.— Բա սրանք ինչո՞ւ ավտոյի տակ չեն ընկնում:

Չեմ կարողանում պատասխանել, որովհետև նրա ասածի մեջ տրամաբանություն էլ կա, ճշմարտություն էլ, լավատեսություն էլ, ու այս անգամ չեմ զսպում ծիծաղս:

Նա նորից շրջվում է դեպի ինձ ու մոխրագույն խելացի աչքերը հանդիմանական հառում է վրաս. կարծես ուզում է ասել՝ ի՞նչ կա ծիծաղելու:

— Դե լավ, մի՛ սրտնեղիր, Ռուբի՛կ,— լրջանում եմ ես:— Կմեծանաս ու ինքդ քեզ համար հեծանիվ կգնես:

— Որ մեծանամ, էլ հեծանիվն ինչի՞ս է պետք,— նորից բորբոքվում է տղան ու հայացքն ուղղում իմ մեքենային:

Այնպիսի՜ երազանք կա մոխրագույն խելացի աչքերում...

— Իսկ հեծանիվն ի՞նչ արժի, Ռուբիկ,— հարցնում եմ:

— 50 ռուբլի,— պատասխանում է:

«50 ռուբլի՞»...

— Այնքան էլ թանկ չի,— ասում եմ:

— Իհարկե, թանկ չի.— ոգևորվում է նա, բայց նորից մռայլվում.— ուղղակի հայրս չի ուզում գնել, դրա համար էլ պայման է կապում հետս:

— Հա, դա դժվար պայման է, Ռուբի՛կ ջան,— մխիթարում եմ նրան:— Ա՛յ, մյախկիցնակները ես էլ միշտ խառնում եմ:

Ռուբիկը փոքր-ինչ մխիթարվում է կարծես ու նորից հոգոց է արձակում:

— Ռուբիկ, մի բան էլ ես առաջարկեմ, բայց խոստացիր, որ չես մերժի:

— Մինչև չիմանամ, ինչ եք առաջարկելու, ինչպե՞ս խոստանամ,— քմծիծաղ է տալիս տղան:

— Ուզո՞ւմ ես, Ռուբի՛կ, ես քեզ համար հեծանիվ գնեմ:

— Չէ,— մերժում է նա:

— Ինչո՞ւ,— հարցնում եմ:

— Դուք հո իմ հայրը չե՞ք,— ասում է:

Նորից չեմ կարողանում զսպել ծիծաղս.

— Ճիշտ է, քո հայրը չեմ, բայց...

— Ի՞նչ բայց,— հարց է տալիս նա լրիվ մեծի պես:



Կարգին շփոթվում եմ նրա հայացքից.

— Բայց...բայց... որպես հորեղբայր:

Ռուբիկը կննում է ինձ. կարծես ուզում է ստուգել, թե ինձանից հորեղբայր դուրս կգա՞, ու հանկարծ այսպիսի հարց է տալիս.

— Իսկ դուք ի՞նչ գործով եք զբաղվում:

Ավելի եմ շփոթվում.

— Ե՛ս... Ը՛... գրում եմ:

— Ի՞նչ եք գրում,— հարցաքննում է նա:

— Գիրք:

— Ի՞նչ տեսակի գիրք:

— Ը՛...մանկական:

Ռուբիկը հալվում է միանգամից՝ գարնան ձյունի պես: Աչքերն էլ ուրախ են ու այնպե՜ս մանկական...

Հետո նա վազում է դեպի մեքենան, բերում է իմ մանկական պատմվածքների ժողովածուն ու սկսում է թերթել... Պարզվում է, որ նա իմ ընթերցողներից է ու ճանաչում է ինձ...

— Ինչքա՞ն ժամանակում եք գրում մի պատմվածքը,— հանկարծ հարցնում է:

— Մեկ կամ երկու օրում,— պատասխանում եմ:

— Իսկ ինչքա՞ն եք ստանում մի պատմվածքի համար:

— Մոտ 50 ռուբլի,— պատասխանում եմ:

— Ուրեմն, ամիսը տասնհինգ հատ հեծանիվ կարող եք գնել,— երանության մեջ ծոր է տալիս նա:

Բայց ես սառը ջուր եմ լցնում նրա երանելի գլխին ու սկսում եմ բացատրել, որ կյանքում հաջողությունը հեշտությամբ չի լինում, որ ամեն լավ բան դժվար է ստեղծվում, որ երբեմն գրում ես, գրում՝ չի ստացվում, երբեմն էլ քեզ թվում է, որ ստացվել է՝ չեն տպում, որ, որ... ու բազմաթիվ այդպիսի «որ»-եր:

Հետո պատմում եմ իմ մանկության մասին. որ իմ հայրն էլ ինձ համար հեծանիվ չէր գնում, ինքս գնեցի մի հին հեծանիվ ու կրակն ընկա: Որ հետո էլ մի հին մոտոցիկլետ գնեցի ու դրա ձեռքն էլ կրակն ընկա: Որ հետո էլ, շատ ավելի ուշ, մի հին «Մոսկվիչ» գնեցի ու այդ «Մոսկվիչի» ձեռքը լրիվ կրակն ընկա:

Իսկ տղան լուռ լսում է ինձ. և մոխրագույն աչքերում այնպիսի լրջություն ու վճռականություն կա, որ ուղղակի հրճվում եմ նրանով: Եվ վերջում նորից առաջարկում եմ.

— Դե, Ռուբի՛կ, արի զոռոզությունդ թող, գնանք ու հենց հիմա մի հեծանիվ գնենք քեզ համար:

— Ո՛չ,— ավելի զոռոզ ու ավելի վճռական պատասխանում է հեծանիվ երազող տղան:

Մտածում եմ՝ ինչպե՞ս վարվեմ նրա հետ, որ չվիրավորվի, ու ասում եմ.

— Ուզո՞ւմ ես, համոզեմ հորդ, նա քեզ համար հեծանիվ գնի:

— Չեք կարող համոզել:

— Կարող եմ:

— Ինչպե՞ս սիտի համոզեք:

— Ը՜... որպես հորեղբայր:

Ռուբիկը հառաչում է, ծպպացնում, քմծիծաղ է տալիս. «հորեղբա՜յր» ու քիչ է մնում ես էլ ծիծաղեմ, որովհետև պգում եմ, որ հորեղբայր բառը և՛ հաճույք է պատճառում նրան, և՛ շղայնացնում...

—Ախր դուք հորս չգիտեք,— խոսում է տղան:— Նա իսկի մորս չի լսում, եղբորը կլսի՞: Նրանը միայն պայմանով է:

— Կարծում ես վա՞տ բան է պայման կապելը, Ռուբի՛կ: Առանց դրա մարդը ոչ մի հաջողության էլ չի հասնի: Արի մենք էլ պայման կապենք:

— Ի՞նչ պայման:

— Մինչև հաջորդ շաբաթ օրը ես մի պատմվածք եմ գրում ու տալիս եմ տալիս: Իսկ դու հինգ հատ «5» ես ստանում, բայց մեր պայմանն այսպիսին է. մրախկիկնակները հաշվի մեջ չեն մտնում:

— Իսկ ի՞նչ օգուտ դրանից:

— Ինչպես թե՝ ինչ օգուտ. ես մի պատմվածք եմ շահում, իսկ դու՝ հեծանիվ:

— Ումի՞ց:

— Հորիցդ:

— Բա մրախկիկնակնե՞րը:

— Դե, պայմանավորվեցինք արդեն, Ռուբի՛կ. մրախկիկնակները հաշվի մեջ չեն մտնում, իսկ հորդ համոզելն ինձ վրա: Թխի՛ր:

Եվ տղան «թխում» է, որովհետև աչքերում արդեն հույսի կայծեր են փայլփլում:

Հետո առաջարկում եմ մի քիչ պտտվել մեքենայով: Նա չի մերժում ինձ: Ես նստում եմ ղեկին, նա՝ կողքիս, և սուրում ենք սառույցից ու աղից քայքայված ասֆալտի վրայով...

Չյունն էլ հալվել է:



Հաջորդ շաբաթ օրը դարձյալ նստած եմ ավազանի բազալտե եզրին և սպասում եմ Ռուբիկին:

Ստվերոտ անկյունների ձյան բարակ շերտերն այլևս չկան, ու բազալտը այնպե՛ս է տաքացել:

Երկինքն էլ արդեն լրիվ կապույտ է:

Հեծանիվ ունեցող երեխաները դարձյալ պտույտներ են գործում իմ շուրջը: Եվ հանկարծ...

— Բարև՛ ձեզ,— լսում եմ Ռուբիկի ձայնը ու շրջվում:

...Այո, Ռուբիկն է՝ հեծանվի վրա նստած, բայց քիչ է մնում չճանաչեմ նրան, որովհետև բոլորովին ուրիշ մի տղա լինի կարծես իմ առաջ կանգնած, այլ ոչ թե անցած շաբաթվա այն լուրջ, թախծոտ ու մտախոհ տղան:

— Այս ո՞ւմ հեծանիվն է,— հարցնում եմ:

— Իմը,— պատասխանում է:

— Ինչպե՞ս:

Եվ նա բացատրում է, թե ինչպես. մրախկիկնակները դրել է իրենց իսկական տեղերում ու հորից հեծանիվ է նվեր ստացել...

Ես գովում եմ նրա հեծանիվը, առաջարկում եմ դուրս գալ քաղաքից: Նա ինձ չի մերժում: Հեծանիվը տեղավորում ենք մեքենայի ետևի մասում, ես նստում եմ ղեկին, նա՝ կողքիս, և դուրս ենք գալիս Երևանից:



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Հեռվում Էջմիածինն է, իսկ մեր շուրջը՝ վարդագույն հսկա բարդիներ: Սլանում ենք ժամում 60 կիլոմետր արագությամբ, ու մտածում եմ.

«Ռուբիկը մրախկիկնակների տեղը գտավ, իսկ կյանքում իր տեղը կգտնի՞,— և գալիս եմ այսպիսի եզրակացության.— երևի կգտնի, քանի որ կարողանում է գերակատարել պայմանը»:

Սլանում ենք ժամում 70 կիլոմետր արագությամբ. Հետո՝ 80, 90, 100:



# ԿԱՐՄԻՐ ՍՈԼԵՐ

ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ

*Յոթը կաճետցիներ՝ կարմիր սոլեր հագած, Վանից Կաճետ են վերադառնում։ Եկել են քաղաք, տասը փարա են վաստակել, տասից յոթը տվել կարմիր սոլեր են առել, հիմա էլ՝ էդ սոլերը հագած, Վանից Կաճետ են գնում։*

*Ճանապարհին մի տեղ հոգնում, նստում են, որ հանգստանան, շունչ առնեն, նորից բռնեն իրենց ճամփան։ Մի աղբյուրի մոտ՝ կարմիր սոլերով ոտները կանաչ խոտի մեջ թաղած, իրենց համար հաց են ուտում, հանկարծ յոթից ամենախելացին հարցնում է.*

*— Տղե՛րք, բա իմ ոտքերը որո՞նք են։*

*Նայում են տեսնում՝ բոլորի ոտքին նույն կոշկակարի մոտից գնված նույն կարմիր սոլերն են՝ բոլորի քթերն էլ սուրսուրիկ, վեր տնկված։*

*— Ամմա՜ն, բա իմո՞նք որոնք են,— հարցնում է մյուսը։*

*— Իմ ոտքերն էլ են կորել, վա՜խ-վա՜խ,— սարսափում է երրորդը։*

*— Վա՜յ մեզ, տղե՛րք, գլխներիդ ճարը տեսեք, ոտքերնիս իրար են խառնվել։*

*— Բա ոնց պիտի ջոկե՞նք...*

*— Բա ո՞վ պիտի ջոկի...*

*— Վայ, վա՜յ, վա՜յ...*

*— Վախ-վախ-վա՜խ...*

*Այսպես գլուխները կորցրած շիվան են անում, ձեռքները ոտներին ու գլխներին տալիս։ Մեկ էլ մի ուղտապան է մոտենում։*

*— Հը, ի՞նչ բանի եք, ի՞նչ եք ձեններդ գլուխներդ գցել, ա՛յ ծուռ կաճետցիներ,— բարկանում է ուղտապանը։*

*Թե բա չես ասի՝ էսպես-էսպես բան.*

*— Նոր կարմիր սոլեր ենք առել, ոտքներս խառնըվել են իրար։*

*— Հա՜, պահո՜,— քթի տակ մռմռում է ուղտապանը,— բանն էդպես է, վա՛յ ձեզ, բաններդ բուրդ է... Դեհ, ով կարող է՝ թող գլուխն ազատի, ոտքերն էլ հետը,— ասում է ու ձեռքի ճիպոտը քաշում՝ տուր թե կտաս սրանց իրար խառնված ոտքերին... Սա քաշում է ու դաղում, կարմիր սոլ է, որ պեծին է տալիս Վանից Կաճետ տանող ճանապարհի կանաչ խոտերի մեջ...*

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

*ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ*

Ալե՜...

Փակում եմ աչքերս։ Մանկության կրկեսը կենդանանում է այս մի հատիկ կանչի մեջ։

Ալե՜...

Ոտքերս կտրվում են գետնից։ Հիմա նրանք չեն հասնում հատակին։ Տաբատս կարճացել, հազիվ է ծածկում ծնկներս, և խունացած դեղատոմսերի փոխարեն գրպաններումս գույնզգույն գետաքարեր են կարնվում իրար ու ավերված ժամացույցների անիվներ, անվիկներ ետ են պտտում ժամանակը։ Փողհարները շեփորում են հիշողությանս հեռավոր անկյուններից, և փողերի խլացած կանչերն այժմ պայծառանում են։ Բաճկոնակիս տակ սիրտս ծառս է լինում։ Թեփի, ձիերի և շների գլխահան անող հոտը պարուրում է ինձ։

Երբ լռում են շեփորահարները, կաչաղակի նման ճերմակակուրծք և սևապոչ ֆրակ հագած մանկության օրերի մարդը նորից հայտնվում է արենայի կենտրոնում։ Նա ձեռքերը պարզում, ողջունում է բոլորին։ Ինչ-որ բան է ասում ու բղավում.

— Ալե՜...

Կիսալուսնի վրա հեծած վուշագույն մազերով աղջիկը գմբեթի խորքից ահա իջնում է արենայի կենտրոնը, հետո երևում են ոսկեթեփուկ, արծաթաթել հագուստներով դերասաններ, և բոլորից լավը՝ մա



# ՎԱՐՏԻՔԱՎՈՐ ՇԱՆ ՄԱՍԻՆ

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

վերը երկկողմյա բացվածքով սանրած տղան, մեր երազանքի ու նախանձի առարկան: Կրկեսից հետո փորձում ենք նրա նման օդի մեջ պտույտներ գործել, ձեռքերի վրա քայլել, բայց չենք կարողանում: Հիմա նա պարմանալի ցատկումներ է կատարում, ժպտում է բոլորին ու կնգուն ձայնով բղավում.

— Ալե՜...

Քիչ է մնում ես էլ բղավեմ, բայց քանի որ չեմ կարող օդի մեջ պտույտներ գործել, ձեռքերի վրա կանգնել ու մի ոտքով քորել մյուս ոտքս, լռում եմ: Լռում եմ, իսկ հետո որոշում, որ նա, այդ հիանալի սանրվածքով տղան, անհնարին բան է՝ չի կարող մեզ նման գնդակ խաղալ, մռութ կոտրել ու ձմերուկի գողության գնալ, սրանք յուրջ մխիթարանքներ են, և ես հիանալի սանրվածքով տղային հանկարծ սկսում եմ խղճալ:

Կրկեսի գմբեթի տակ մի խումբ թռիչք է գործում: Մեկի տաբատը ցատկումի ժամանակ ընկնում է, ու բոլորը ծիծաղում են: Նվագախումբը նոր եղանակ է նվագում, նորից փողհարները շեփորում են, և շախմատաձև խուլված գավակներով ձիերը պտտվում են արենայի շրջագծի մեջ: Հետո վարտիքավոր շնիկներ են հայտնվում: Նրանք ետևի թաթերի վրա կանգնած՝ ցուցադրվող թվերի չափ հաչում և պարում են, ու ես հենց այդ պահին որոշում եմ կրկեսի շուն գողանալ: «Կպահեմ շունը,— ասում եմ ինքս ինձ,— ու բոլորին կվարժեցնեմ: Նա հաչոցով կբազմապատկի, կբաժանի խնդիրները, և ես, որ հանրահաշվից միշտ «երկուսներ» ունեմ, հանկարծ բարձր թվանշաններ կստանամ: Մեր դասատուն ոչ մի կերպ գլխի չի ընկնի, որ շունն է հաչում»: Այսպես եմ մտածում, ու մտածածս հանկարծ իրական է թըվում: Դպրոցում եմ, գրատախտակի մոտ և բազմապատկման ու բաժանման ողջ աղյուսակը շունս հաչում, իսկ ես արագ-արագ կրկնում և նստում եմ տեղըս: Հետո ուրիշ սխրագործություններ եմ կատարում, և շունս ինձնից անբաժան է: Նա իմ փրկիչն է, թըշնամիներիս ահ ու սարսափը: Նամակներ է տանում ու նամակներ բերում. պտտում է մեր փողոցի անկյունում ապրող տղայի միշտ նոր ու մաքուր վերնաշապիկը, գզում նրա կատվին:

Ալե՜...

Կրկեսի արենայից հեռանում են վարտիքավոր շներն ու նրանց փոխարեն երևում են շան դիմակներ հագած ծաղրածուներ, որ հաչում են իրար վրա: Ինձ այս ամենը ՝էլ չի հետաքրքրում: Միտքս զբաղված է շուն գողանալու ծրագրով, և ես ընտրում եմ ամենաանհավատալին, որն ինձ բոլորից հնարավորն է թըվում: Ծանոթանում եմ կրկեսի տղայի հետ, հրավիրում եմ մեր փողոցը գնդակ խաղալու: Նա դառնում է մեր կռիվների մասնակից, մեզ հետ գալիս է ձմերուկի գողության և իբրև ընկերության նշան՝ մի շուն է նվիրում ինձ:

Երբ կրկեսից վերադառնում եմ տուն, ընկերներիս հետ խոսում եմ շուն գողանալու մասին: Նրանցից ամեն մեկին մի շուն եմ խոստանում, իսկ թե, բան է, չհաջողվի ու միայն մեկը գողանամ, բոլորինս կլինի և ամեն մեկն առանձին-առանձին կկերակրի, կխնամի: Թաղի տղաները համաձայնում են: Ու ամեն մե-



կըս տնից ուտելու բան առած՝ օրերից մի օր գնում ենք կրկեսի կողմը: Կրկեսի ետնամասում դերասանների հանրակացարաններն են: Հենց այստեղ, թակում ապատ կըռսնում են շները: Վարտիքավոր շներն անվարտիք վիճակում բոլորովին անամոթ ու տկլոր են թվում, ու թե թաղի բակապահ շները մեզ երբեք չեն կարմացրել իրենց բնական տեսքով, սրանք պարզապես ապշեցնում են: Մենք երկաթյա ձողերին ծեփված շնային անուններ տալու փոխարեն, ինչ-որ բացականչություններով մոտ ենք կանչում ու երշիկի, տապակած մսի կտորներ տալիս նրանց: Զարմանում ենք. կրկեսի շները շնավարի մեր ձեռքից խլում են ուտելեղենները, գռմռում իրար վրա, կծոտում, կռվում: Մեկին հաջողվում է դուրս քաշել ճաղերի արանքից: Ես գիրկս եմ առնում փոքրիկ, սև խալերով շնիկին ու սլանում եմ դեպի մեր թաղը և այդ օրվանից երկար ժամանակ էլ չեմ երևում կրկեսի կողմերը, մինչև նրանք գնում են ու փոխարենը հայտնվում է նորը՝ առյուծների ու փղերի կրկեսը:

— Այս ի՞նչ շուն ես բերել,— ասում է հայրս,— մայրդ ասում է անկողինների վրա է քնում:

— Տար դե՛ն գցիր, ո՛չ հարստություն ունենք, որ պահպանի, ո՛չ էլ սիրտ,— ձայնակցում է մայրս: Իսկ կրկեսի շունը նայում է նրան և կարծես հասկանալով, մեղմորեն հաչում:

— Խելոքն է,— հանկարծ որոշում է հայրս,— լավ, թող մնա:

— Իհարկե, այդպես կասես, հո դու չե՛ս լվացքը անում, իսկ իմ չարչարանքը քեզ համար արժեք չունի և ե՞րբ է արժեք ունեցել որ:

— Նորից սկսեցի՞ր:

— Սկսեցի, բայց ի՞նչ օգուտ:

— Լավ, ի՞նչ ես ուզում: Այս ցուրտ աշնանը այս շանը փողո՞ց նետենք, ինչ է:

— Ուր ուզում եք տարեք.— կտրում է մայրս:

Աչքերս արցունքներով են լցվում, իսկ կրկեսի շունը մեկ հաչում է մորս վրա, մեկ՝ հորս, ու մեկ էլ նայում է ինձ, հետո մոտենում, լիզում է մորս ձեռքերը, և նա, որ քիչ առաջ անդրդվելի էր, գնում է պատշգամբ և փոքրիկ թասը մսի կտորներով է լցնում:

— Շո՛ւն, ա՛յ շուն, այստե՛ղ արի, ճաշդ կե՛ր ու սենյակի անկյունում քնի՛ր,— կարգադրում է մայրս:

Կրկեսի շունը տարիներ շարունակ ապրում է մեր տանը, ձագեր է բերում, որոնք բաժանում եմ թաղի տղաներին: Մոռանում է ետևի ոտքերի վրա կանգնելը ու ցույց տված թվերի չափ չի կարողանում հաչել, բայց երբ հանկարծ վարտիք եմ հագցնում, ընկրկում է տխուր վնգստալ, հիշում է կրկեսը ու ատամներով փորձում հանել վարտիքը: Հետո նրան մենք մեկ հետ գյուղ ենք տանում ու գյուղական շները նրա փոքրությունից զարմացած՝ կարծում են, թե ձագ է և մոտ չեն գալիս: Բայց նա ծերունու նման փնթփնթում, գոմռում է և, գլուխը կախ, այգի է գնում, ու մի օր գյուղի շները գլխի են ընկնում, որ ձագ չի և գզում են: Հիվանդանում է կրկեսի շունը, ետևի ոտքերը թուլանում են ու չի կարողանում քայլել: Մայրս, որ միշտ նրան տնից դուրս գցելու ծրագրեր ուներ, հիմա խնամում, կերակրում է և ամեն անգամ ասում.

— Շո՛ւն, ա՛յ շուն, քեզ ի՞նչ պատահեց, ինչո՞ւ հանկարծ այսպես ծերացար:

Իսկ նա մրսում է, դողդողում, և մենք շորեր ենք գցում նրա վրա, և շունը կարծես ինչ-որ բան է հիշում, երևի հիշում է իր վարտիքավոր անցյալն ու ատամներով ետ է գցում շորերը և նորից դողդողում:



Մի անձրևոտ օր, երբ ես դպրոցում էի, սատկեց իմ շունը: Հայրս թաղեց նրան ու երբ դասից վերադարձա, իմացա այդ տխուր լուրը, ողբացի, լաց եղա:

Ալե՜...

Փոքրիկ Արամիկի հետ կրկես եմ եկել: Վարտիքավոր շնիկները ետևի թաթերի վրա կանգնած, պըտտվում են արենայի շրջագծի մեջ: Արամիկը ուրախ ճչում ու խնդրում է ինձ կրկեսի շուն գնեմ, իսկ ես մանկացած հիշում եմ իմ գողացած շունը և հազիվ, լսելի, ինքս ինձ մրմնջում.

«Շո՛ւն, ա՛յ շուն, ինչո՞ւ այդքան շուտ ծերացար, դու դեռ կարող էիր ապրել, ինձ հետ ծերանալ, ոտքերիս մոտ պառկել ու նայել, թե ինչպես քո մասին պատմվածք եմ գրում»:

Ալե՜...

Վարտիքավոր շները հեռանում են արենայից, հիմա շան դիմակ հագած ծաղրածուները հաչում են իրար վրա, բայց ո՛չ ես, և ո՛չ էլ Արամիկը չենք հետաքրքրվում նրանցով: Իմ մանկության կրկեսը վերջանում է, նրանը՝ սկսվում: Փողերի կանչերը խլանում, մարում են իմ հուշերում, իսկ նրա կրծքի տակ բազմապատկվում, հզորանում են: Ու երբ մենք ձեռք-ձեռքի ելնում ենք կրկեսից, Արամիկը խնդրում է.

— Ինձ համար կրկեսի շուն գնիր:

Իսկ ես մտածում ու անձայն ինքս ինձ մրմնջում եմ. «Շո՛ւն, ա՛յ շուն, ինչո՞ւ այդքան շուտ ծերացար, ինչո՞ւ քո կյանքը ավելի կարճ է, քան իմը, և այդ պատճառով ես ուրիշ շներ ունեցա: Ների՛ր ինձ, իմ շո՛ւն»: Այսպես եմ ասում ինքս ինձ ու հիշում եմ ուրիշ շների, որ պահել եմ մինչև նրանց ծերությունը: Նրանք հիմա իմ հուշերում ոհմակ կազմած գնում, հեռանում են անցած տարիների միջով. ու նրանց ետևից վազում է մանկությունս: Ես հանկարծ սեղմում եմ Արամիկի ձեռքը, կարծես ուզում եմ բռնել կորցրած մանկությունը, իսկ նա բառերը կուլ տալով, ասում է.

— Ինձ համար շո՛ւն գնիր, կրկեսի շուն, վարտիքավոր շուն, որ մյուսների նման տկլոր չինի:

# ՀԵՌԱՎՈՐ ՄՈԼՈՐԱԿՆԵՐԻ ՃԱՄՓՈՐԴՆԵՐԸ



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Լևոնը հևիհև մտավ պիոներական սենյակ և նստեց աթոռին: Ընկեր Ալլան կարդաց «մարսեցիների» հեռագիրը. «Կիրովական, № 1 դպրոց, պիոներական դրուժինայի խորհրդի նախագահ Լևոն Մութաֆյանին...»

Լևոնը զարմանքով թարթեց աչքերը: Ընկեր Ալլան շարունակեց. «Հաղորդում ենք, որ քիչ առաջ, Մարսի ժամանակով ժամը 13-ին վայրէջք կատարեցինք Կանաչ լեռ բարձունքի վրա: Սպասում ենք ձեզ»:

— Իսկ մյուս ջոկատներից հեռագրեր չկա՞ն,— կապավորին դիմեց ջոկատավարը:

— Դե, շտապենք տիեզերակայան, հարկավոր է դիմավորել տիեզերքի հերոսներին— ընկեր Ալլան տեղից վեր կացավ:

Նրանք դուրս եկան միջանցք: Երբ անցնում էին 7-րդ «Ա» դասարանի կողքով, բոլորն էլ առանց զարմանքի դռան վրա կարդացին. «Մեր դասարանը ճանապարհորդություն է կատարում «Մեծ արջ» համաստեղությունում. 7-րդ «Բ»-ն մեկնել է Յուպիտեր՝ ուսումնասիրելու անծանոթ մոլորակի գաղտնիքները: 6-ի «Գ»-ն արշավի է դուրս եկել պոչավոր աստղերի հետքերով՝ իրենց հետ վերցնելով Բյուրականի աստղադիտարանի ամենամեծ դիտակներից մեկը:

Ջոկատների հրամանատարները՝ ընկեր Ալլայի հետ շտապ մեկնեցին «տիեզերակայան»: Սոճիների պուրակում լռություն էր: Պատանի տիեզերագնացների մի խումբ կազմ ու պատրաստ սպասում էր:

Տիեզերակայանի պահակախումբն էր:

— Ամեն ինչ պատրա՞ստ է վայրէջքի համար,— հարցրեց ընկեր Ալլան:

— Պատրա՛ստ է,— զեկուցեց պահակախմբի պետը:

Ընդամենը երեք շաբաթ առաջ էր: Դրուժինայի խորհրդի անդամները հավաքվել էին «արտակարգ խորհրդակցության»:

— Տիեզերագնացության տոնն է գալիս, իսկ մենք...

— Եկեք երևակայական ճանապարհորդություն կատարենք տիեզերքում:

Դե, երևակայական ճանապարհորդությունը ևս խաղ ու պար չէ: Չէ՞ որ ջոկատները մրցում են, թե ով ավելի շատ բան գիտե «իր մոլորակի» մասին: Գրադարաններ են մտել, թերթել տիեզերքի մասին պատմող գրքերը, հանդիպումներ ունեցել գիտա-հետազոտական ինստիտուտի աշխատակիցների հետ, նամակներ են գրել Բյուրականի, Պուլկովոյի, Ղրիմի աստղադիտարաններին: Իսկ երբ իմացան, որ տիեզերագնաց-օդաչու Ալեքսեյ Լեոնովը Երևանում է, ընկեր Ալլան շտապեց մայրաքաղաք և ձեռք բերեց նրա ինքնագիրը՝ տիեզերագնացների անկյան համար: Եվ հիմա «տիեզերակայանում»՝ Վանաձորի սոճիների պուրակում նրանք «վերադառնալու» են տիեզերական ճանապարհորդություններից և զեկուցելու են իրենց նոր «գիտական հայտնագործությունների» մասին: Ահա Լևոնը հրթիռով ազդանշան է տալիս և շեփորները կրկին թնդացնում են անտառը: Անտառի ինչ-որ բացատից թղթե արբանյակը վայրէջք է կատարում, իսկ չանցած մի վայրկյան, երևում է անձ-



## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

ԷԼՄԻՐ ՄԿՐՏՉՅԱՆ

Մերկացել է մեր թթենին,
Կուչ է եկել ու ճեծեծում,
Քամին սառած մտրակ ձեռին,
Բաց կողերն է նրա ծեծում:

Ցրտից կապտած ճյուղերը նա
Չգիտի, թե ուր թաքցնի,
Շուտով Ձմեռ պապին կգա,
Ճերմակ մուշտակ կհագցնի:

նակազմը՝ տիեզերագնացների անվան ջոկատը:

Երբ բոլորը հանդիսավոր տողանի են կանգնում, ջոկատի խորհրդի նախագահ Արամայիսը զեկուցում է.

— «Տիեզերք» օպերացիայի գլխավոր հրամանատար ընկեր Ալլա Հովհաննիսյան, Մրասի վրա մեր թռիչքն ավարտված է: Հայտնաբերել ենք մի քանի անհայտ լիճ, հնադարյան քաղաքի ավերակներ, հանդիպում ենք ունեցել Տերեշկովա քաղաքի № 1 դպրոցի երեխաների հետ: Մեր ջոկատի կատարած բոլոր հայտնագործությունների մասին զեկույցը հանձնում եմ ձեզ...

Հետո վայրէջք են կատարում արբանյակները Վեներայից, Լուսնից, Սատուրնից, «Մեծ արջ» համաստեղությունից... Վերջում բոցկլտաց տիեզերական խարույկը, և ընկեր Ալլան Ալեքսեյ Լեոնովի ինքնագրով լուսանկարը հուշանվերների հետ հանձնեց «Տիեզերք» երևակայական ճանապարհորդությունում հաղթող՝ Բաղրամյանի անվան ջոկատին: Հենց նույն օրն էլ, երեկոյան, նրանք հանդիսավորությամբ բաց արին դպրոցի տիեզերագիտության անկյունը, և բեմից, խորհրդավոր լռության մեջ, հնչեց Լևոնի ձայնը.

— Բոլորի՛ն, բոլորի՛ն, բոլորի՛ն, սկսում ենք մեր նոր երևակայական ճանապարհորդությունը Իլյիչի քաղաքներով...

Եվ «հեռավոր մոլորակների ճանապարհորդները» նորից ուղեծիր դուրս եկան: Այս անգամ 7-րդ «Ա»-ի դռան վրա հայտնվեց ուրիշ հայտարարություն. «Մեր ջոկատը մեկնել է Լենինգրադ»: 6-րդ «Գ»-ն արդեն Ուլյանովսկից դպրոցական ռադիոհանգույցով լուրեր էր հաղորդում.

— Եղանք այն գիմնազիայում, որտեղ Վոլոդյա Ուլյանովն է սովորել:

Ուրախ լուրեր ստացվեցին նաև Մոսկվայից, Կազանից, արտասահմանյան այն քաղաքներից, որտեղ եղել է Իլյիչը՝ Փարիզից, Ժնևից, Ստոկհոլմից... Դպրոցի պատին հայտնվեց «էլեկտրական» քարտեզը՝ «Լենինյան վայրերում»:



Դպրոցում սկսվեց նաև երևակայական ճանապարհորդություն մեր հայրենիքի հերոս քաղաքներով: Երեխաներից մի քանիսը եղել էին Մոսկվայում, Լենինգրադում, Վոլգոգրադում, Սևաստոպոլում, Օդեսայում, Կիևում, Բրեստում. Նրանք օգնեցին, որ հերոս-քաղաքներին նվիրված սրահում ցուցադրվեն հետաքրքիր նյութեր, լուսանկարներ, նամակներ՝ ստացված հեռավոր բարեկամներից:

Իսկ ինչո՞վ են զբաղված հիմա նրանք՝ «հեռավոր մոլորակների ճանապարհորդները»:

— Սկսել ենք նոր օպերացիա՝ «Ջահ» նշանաբանով,— պատմում է դրուժինայի խորհրդի նախագահ Լևոն Մութաֆյանը,— մեր երևակայական նոր ճանապարհորդության երթուղին ձգվում է աշխարհի մի ծայրից մյուսը: Այցելելու ենք արտասահմանյան երկրների մանկական և պիոներական կազմակերպություններին, գրելու ենք նրանց պատմությունը, ձեռք ենք բերելու մեր բարեկամների վըզկապները, կրծքանշանները: Լինելու ենք նաև սփյուռքահայ վարժարաններում:

Եթե հիմա մի անծանոթ մտնի դպրոց, զարմանքով կկարդա տարօրինակ հայտարարությունները. «Ջոկատը մեկնել է Ֆրանսիա, մեր բարեկամների՝ «վայհանների» մոտ»:

Դո՞ւք, երեխաներ, չե՞ք ուզում հանդիպել «հեռավոր մոլորակների ճանապարհորդներին»: Ո՛չ, ո՛չ, դրա համար անհրաժեշտ չի լինի թռչել ո՛չ Լոնդոն, ո՛չ Փարիզ, ո՛չ էլ Դելի... Պարզապես հարկավոր է ծոցատետրում գրել մի կարճ հասցե. Կիրովական, № 1 դպրոց. «Հեռավոր մոլորակների ճանապարհորդներին»:

ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



# ՈՒՌԵՆՈՒ ՃՅՈՒՂԸ

*(Ճապոնական հեքիաթ)*

Տանտերը ինչ-որ տեղից մի ուռենու ճյուղ ճարեց և տնկեց իր այգում: Դա հազվագյուտ տեսակի ուռենի էր: Տանտերը աչքի լույսի պես պահպանում էր ճյուղը. ամեն օր ինքն էր ջրում: Բայց այնպես պատահեց, որ նա մի շաբաթով պետք է մեկներ, ուստի կանչեց իր ծառային և ասաց.

— Ճյուղին լավ կնայես. ամեն օր ջրիր և որ գլխավորն է՝ լավ նայիր, որ հարևանի երեխաները չպոկեն և չտրորեն:

— Լավ,— պատասխանեց ծառան,— թող տանտերը չանհանգստանա:

Տանտերը մեկնեց: Մի շաբաթ հետո վերադարձավ և գնաց այգին աչքի անցկացնելու: Ճյուղը իր տեղում էր, սակայն արդեն թոշնած:

— Ես ջրել եմ այնպես, ինչպես դուք ասել էիք: Ես նայում էի նրան, աչքից բաց չեմ թողել,— պատասխանեց ծառան:—Առավոտվանից դուրս էի գալիս պատշգամբ և մինչև երեկո ճյուղին էի նայում: Իսկ երբ մթնում էր, ես նրան հանում էի, տանում տուն ու փակում էի արկղի մեջ:

*Թարգմ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆԻ*



# Ուզում եմ ամեն ինչ իմանալ

Չիլիի երկաթուղային ճանապարհներից շատերի վրա երթևեկում են առջևից նիզակ ցցած շոգեքարշեր: Նիզակը ցուլերից պաշտպանվելու համար է: Նախազգուշական այդ միջոցը բնավ էլ ավելորդ չէ, քանի որ դանդաղաշարժ և համառ այդ կենդանիների հետ ընդհարումը հաճախ է լուրջ աղետների պատճառ դառնել:



Ճենապակու հայրենիքում. Մեյսենն քաղաքում գտնվում է մի հուշարձան՝ ճենապակե կանգակատուն:

Զանգերից յուրաքանչյուրը մի նոտա է, իսկ նոտաները դաշնամուրի ստեղնաշարի կեսի չափ են:

Զանգերի օգնությամբ կարելի է տարբեր մեղեդիներ նվագել, բայց դա այնքան էլ դյուրին չէ: Նախ՝ նվագողը կարող է մոլորվել երեսուն կանգերի թոկերի մեջ, և ապա՝ անհրաժեշտ է նվագել շատ զգույշ ու դանդաղ, որպեսզի ճենապակին հանկարծ չկոտրվի:

Երբ գերանը կտրում են պողպատե սղոցով, թեփ է առաջանում: Իսկ այդ թեփը կորչում է իզուր:

Միչիգանի համալսարանի գիտնականները առաջարկել են գերանները կտրել ջրե «սղոցով»: Իսկ ի՞նչ բան է դա: Աչքի համար անտեսանելի անցքից տասը մթնոլորտ ճնշման տակ դուրս են մղում ջրի շիթը: Հենց այդ շիթն էլ կտրատում է հաստ գերանը: Ընդ որում, կտրման մակերեսը կարծես հղկված լինի: Ոչ թեփ է առաջանում և ոչ էլ անհրաժեշտ է լինում հետագայում հղկել տախտակները:

*Շվեյցարիայի Սեն-Բեռնար սարում կառուցված նոր թունելից օգտվում են ոչ միայն մարդիկ: Գարնանն ու աշնանը այդ թունելով դեպի հյուսիս ու դեպի հարավ են չվում ծիծեռնակները: Թունելը նրանց ճանապարհը խիստ կարճացնում է:*



*Բուսական պոմպ: Հաճախ այսպես են անվանում էվկալիպտներին: Այդ վիթխարի ծառերը տարվա ընթացքում ընդերքից ներծծում են գրեթե 14 հազար դույլ ջուր: Էվկալիպտները շատ արագ չորացնում են ճահիճները:*

**Դուք երևի գիտեք, որ 1, 2, 3 և 5 կոպեկանոց մետաղադրամները համապատասխանաբար կշռում են 1, 2, 3 և 5 գրամ: Բայց դժվար թե լսած լինեք, որ թելի կոճի վրա գրված համարը՝ այդ թելի քաշի պայմանական նշանն է, ավելի ճիշտ՝ մեկ գրամ կշիռ ունեցող թելի երկարությունն է մետրերով:**

**№ 40 թելի մեկ գրամը 40 մետր երկարություն ունի: № 100 թելի մեկ գրամը՝ 100 մետր երկարություն:**

**Եթե № 100 թելից 10 սանտիմետր կտրենք, ապա կունենանք 1 միլիգրամ քաշ ունեցող «կշռաքար»:**

*Ամենահինավուրց ազգային հիմնը ճապոնականն է: Հիմնի տեքստը գրված է 9-րդ դարում: Ամենաերկար ազգային հիմնը հունականն է: Այն բաղկացած է 158 տողից: Իսկ ճապոնական հիմնի տեքստը ընդամենը չորս տող է: Նույնքան կարճ են Հորդանանի և Սան-Մարինոյի հիմները:*

*1935 թվականը խավարումների «բերքառատ» տարի է եղել: Այդ տարվա ընթացքում Երկրից կարելի էր դիտել Արևի հինգ և Լուսնի երկու խավարումներ: Խավարումների ռեկորդը կկրկնվի 1982 թվականին, որի ընթացքում կդիտվի Արևի չորս և Լուսնի երեք խավարում:*

Շոտլանդացի նավաստի Ալեքսանդր Սելքիրքի մահվան 200-ամյակի կապակցությամբ, նավաստու, որի արկածները հիմք հանդիսացան Դանիել Դեֆոյի համար ստեղծելու Ռոբինզոն Կրուզոյի կերպարը, Չիլիի կառավարությունը որոշեց Խուան-Ֆերնանդես արշիպելագի երկու կղզիները վերանվանել: Այսուհետև Մաս-Աթուերա կղզին կոչվելու է «Ռոբինզոն Կրուզո», իսկ Մաս-ա-Թերրան՝ «Ալեքսանդր Սելքիրք»:




Ուզում եմ ամեն ինչ իմանալ



Վերջերս ֆրանսիացի հնագետները վճռեցին գունավոր ժապավենի վրա մի անգամ ևս լուսանկարել եգիպտական փարավոնների բուրգերի ներքին սրահներում գտնվող որմնանկարները։ Այդ որմնանկարները թեև հազվադեպ են պատահում, բայց վաղուց հայտնի են գիտությանը։

Այս անգամ, սակայն, գիտնականների ուշադրությունը գրավեց մի շատ հետաքրքիր փաստ, որը առաջներում ոչ ոք չէր նկատել։ Բուրգի ներքին սրահներում, հատկապես առաստաղին, մրի և ոչ մի հետք չկար։ Հապա ինչպե՞ս են եգիպտացի վարպետները լուսավորել իրենց աշխատանքի վայրը։

Եվ այս հարցը դեռևս ոչ մի պատասխան չի ստացել։



Տաջիկ հնագետները չափազանց զարմացան, երբ Շահրիստանի մոտակայքում գըտնըվող պալատը պեղելիս, պատերից մեկի վըրա հայտնաբերեցին մի որմնանկար, որը պատկերում էր... Ռոմուլոսին, Ռեմուսին և նշանավոր էգ գայլին, որը սնել էր Հին Ռոմի ապագա հիմնադիրներին։ Այդ պալատը կառուցվել է ավելի քան հազար տարի առաջ։ Եվ առայժմ դեռևս հայտնի չէ, թե ինչպես է Հին Աշխարհի պատմության դասագրքից բոլորին հայտնի այդ ավանդությունը հասել մինչև Միջին Ասիա։



Ֆրանսիացի գիտնականները հայտնագործել են ձկան մի նոր տեսակ, որը բնակվում է Խաղաղ օվկիանոսի խորքերում։ Այդ գիշատիչ ձուկը օվկիանոսային մըռայլ խավարում ձկնիկներին հրապուրում է գլխի վրա գտնվող երկու աղբյուրներից սփռվող լույսով։ Ինչպես պարզվել է, գիշատիչի գլխին գտնվող օրգաններից ծընվում են ոչ միայն սովորական լույսի փնջեր, այլև ռենտգենյան ճառագայթներ։

Սախալին կղզու շրջանում ծովը հարուստ է առանձնահատուկ ջրիմուռներով, որոնք կարող են հիանալի հումք դառնալ մեր տեքստիլ արդյունաբերության համար։ Ծովային ծագում ունեցող մանրաթելը չափազանց ամուր է և շատ ավելի թեթև, քան բամբակե մանվածքը։ Սակայն նոր հումքի հիմնական առավելությունը մանրաթելի երկարությունն է։ Ուրեմն, մշակելուց հետո, այն կարելի է օգտագործել ամուր թել, հետևաբար և շապիկներ, առագաստներ, թոկեր, գուլպաներ պատրաստելու համար։





Բելոռուս հնագետները վերջերս մի շարք անսպասելի հայտնագործություններ կատարեցին։ Հանրապետության տարբեր վայրերում պեղումներ կատարելիս նրանք գտան հռոմեական մետաղադրամներ, ուլունքներ, բրոնզե անոթներ։ Եզրակացությունը այսպիսին էր. շուրջ երկու հազար տարի առաջ ժամանակակից Բելոռուսիայի տերիտորիայում ապրող ցեղերը աշխույժ առևտուր են արել Հին Հռոմի հետ։




Անապատներում աշխատող երկրաբանների համար ուղղաթիռներով կարելի է հասցնել այնքան ջուր, որը բավական ացնի ամբողջ մեկ տարի: Սակայն, սովորաբար, հարկադրված են լինում ջուր հասցնել շաբաթական գոնե մեկ անգամ, քանի որ շոգից ջուրը շատ արագ փչանում և կորցնում է համը: Վրացի մասնագետները հայտնագործել են խմելու ջուրը պահածոյի վերածելու հուսալի միջոց: Հիմա սովորական տակառներում ջուրը կարելի է պահել շուրջ երեք ամիս: Ջրի մշակումը կատարվում է հզոր էլեկտրամագնիսի դաշտում:



Վերջին տարիներին վայրի թռչունների շուրջ 300 տեսակ անտառներից հեռացել ու վերաբնակվել են Եվրոպայի քաղաքներում: Վարշավայում, օրինակ, հանգիստ ապրում են վայրի բադեր և ծիրանագույն արագիլներ, Կոպենհագենում՝ սուզահավեր, Պրագայում՝ կռունկներ, Լոնդոնում՝ բվեններ:

Հնդիկ գյուղացիները հնուց ի վեր խրճիթները օձերից պաշտպանելու համար տան շեմքը օծում են մանանեխով: Վերջերս Անգլիայում ստեղծված է արհեստական մի փոշի, որը մանանեխի հոտ ունի, բայց այդ հոտը ավելի սաստիկ է: Այդ փոշու օգնությամբ կարելի է ստեղծել այնպիսի պատնեշ, որը չի փորձի հաղթահարել և ոչ մի օձ:






Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 11 Նոյեմբեր 1969 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

---


Ի տեղի գլխավոր խմբագրի՝ Կ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.:

„Пионер" на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան-15, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 05748: Պատվեր՝ 1152: Տպաքանակ՝ 54600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 24/XI, 1969 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի՝ պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.

ԻՆԴԵՔՍ 77806

# ԻՄ ԳՅՈՒՂԸ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Ասես մի քարե
Աթոռի վրա
Բազմած է Ակներ
Իմ գյուղը ահա
Աղբյուրներ ունի
Վճիտ, սառնորակ.
Որ կողմ էլ նայես
Անտառ ու ծորակ
Գյուղի պռնկին
Կա մի հսկա ծառ.
Դառնում է շոգին
Հոգնածին հովհար
Իսկ առավոտյան
Թե հոնուտ մտնես.
Նապաստակները
Ողջույն կտան քեզ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ